փէտրայի մէջ, փլատակներուն տակ թաղելով 200 հոգի: Կ'ըսուի նաեւ թէ քարիւղի երկու մթերանոցներ բռնկած են: Մեծ խուճապ կը տիրէ Հոլիուտի մէջ, ուր հարիւրաւոր մարդիկ փողոց թափած են: Լոնկ Պիչի հետ հաղորդակցութիւնները խզուած են:

## Գործառնութեանց տուրքին փոխարէն

Առեւտրական եւ ճարտարագործական խմբակցութեանց կողմէ պատուիրակութիւն մը ներկայանալով ելմտացոյցի նախարարին, կարգ մը պահանջներ ներկայացուց եւ մասնաւորապէս խնդրեց միօրինակ տուրք մը հաստատել փոխանակ գործառնութեանց տուրքին (chiffre d'affaires):

Նախարարը պատասխանեց թէ պիտի ուսումնասիրէ ներկայացուցած առաջարկները, եւ թէ նպատակէնի շատ մը ճիւղերուն համար պահանջուած բարեփոխումը գործադրման ճամբուն մէջ է:

## Նոր խուզարկութիւններ Կրընոպլի դէպքին առթիւ

Կրընոպլի թերթերը կը գրեն թէ ընդհ. դատախազը ընկերակցութեամբ դատական պաշտօնեաներու եւ մասնագէտներու, ուրբաթ առտու խիստ խուզարկութեան ենթարկեց Սէն Մարթէնի հայկական սրճարանը: Սրճարանատէր Կիւրեղեան (կամ Կիւրինեան) այս առթիւ բանտէն հանուելով, երկու ոստիկան զինուորներու ընկերակցութեամբ փոխադրուած էր իր սրճարանը: Լսուած ըլլալով որ փետր. 26ի հանդէսին երթալէ առաջ, կարգ մը Հայեր կրակ բացած էին այդ սրճարանին վրայ, «փորձելու համար թէ իրենց ատրճանակները լաւ կը բանի՞ն», ընդհ. դատախազը կ'ուզէր ստուգումներ կատարել:

Դատախազը պարպել տալով սրճարանը, մանրամասն քննութիւն մը կատարեց ընկերակցութեամբ իր հետեւորդներուն: Սրճարանին տախտակամածին եւ խոհանոցին ձեղունին մէջ գտնուեցան գնդակի հետքեր: Երկու գնդակներ եւս գտնուեցան, երկուքն ալ 6·35 միլիմեդրնոց: Այն տախտակները որոնց վրայ գնդակի հետքեր կային, հանուեցան եւ յանձնուեցան մասնագէտի մը:

Երբ դատախազը վերջացուց իր գործը, հարցաքննիչ դատաւորը սկսաւ հարցաքննել Կիւրեղեանը, որ ուժգնօրէն յայտարարեց թէ անմեղ է եւ իր պատիւին վրայ երդում ըրաւ թէ որ եւ է գնդակ չէ արձակուած սրճարանին վրայ: Այս առթիւ լսուեցան քանի մը Հայերու վկայութիւնները: Բոլորն ալ պնդեցին թէ հանդէսին նախընթաց օրը կամ նոյն օրն իսկ, իրենց կարգ մը հայրենակիցները սրճարանին մէջ փորձած էին իրենց զէնքերը:

Կէս օրին գործողութիւնը վերջացաւ եւ Կիւրեղեան նորէն փոխադրուեցաւ Սէն Ժոզէֆի բանտը:

Կէսօրէն յետոյ, ոստիկանական տեսուչ Պ. Վաթառ լսեց շատ մը վկաներ եւս, որոնց յայտարարութիւնները պիտի ստուգուին կէտ առ կէտ:

---

Տէր եւ Տիկին Հրաչեայ Տէր-Բարսեղեան (Մարսէյլ), Վազգէն Տէր-Բարսեղեան (Մարսէյլ), Այրի Տիկին Արաքսի Տէր-Բարսեղեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Ղազարոս Նարինեան (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Անդրանիկ Ժամկոչեան (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Հաճի Մաքսուտ Կտաւճեան (Մարսէյլ), Այրի Տիկին Ալիքսանեան եւ որդիք (Մարսէյլ), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՀԱՆԸՄ ՆԱՐԻՆԵԱՆԻ

(ծնեալ՝ ՔԷՇԻՇԵԱՆ, Թալաս)

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ 9 Մարտ, Հինգշաբթի օր, 54 տարեկան հասակին մէջ, կաթուածի հետեւանքով:

ԾԱՆՕԹ.— Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

---



Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme :-: PARIS (13e) — Imprimerie A. DER (AGOPIAN)



Ն. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ
(Կայսր Նիկիֆոր Ֆոկաս)






Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17. Rue Damesme :-: PARIS (13e)


ԲԺՇԿԱԿԱՆ ԱՍՈՒԼԻՍ (4)

# ԹՈՔԱԽՏԻՆ ԴԷՄ

## ( ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՓՈՔՐԻԿ ԱՌԱՋՆՈՐԴ ՄԸ )

Կատարեալ սխալ մըն է յաւակնիլ թէ կարելի է մարդու մը արտաքին երեւոյթէն կամ ուրիշ աւանդական նշանէ մը ճանչնալ թոքախտին գոյութիւնը (*նիհարութիւն մը, որ ոսկորներուն համրանքն իսկ ցոյց կուտայ, խորունկ հազ մը, գիշերային քրտինք, եւայլն*): *Այսպիսի նշաններու շատ կը հանդիպինք, ընդհանրապէս, հիւծախտին վերջին շրջանին, բայց այդպիսի հիւծախտ մը մասնակի մէկ ձեւն է թոքախտին:*

Բոլորովին տարբեր են այն ախտանշանները, որոնք պէտք է ուշադրութիւն գրաւեն եւ որոնց համար պէտք է անմիջապէս բժիշկին տանիլ ենթական:

*Ահա այդ նշանները.—*

*Ա.— ԱԽՏԱՆՇԱՆՆԵՐ, ՈՐ ԿԸ ՎԵՐԱԲԵՐԻՆ ՇՆՉԱՌԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՆ.— Գրեթէ ստոյգ նշան մըն է արիւն թքնելը: Մշտակայ նշան մըն է թոքամիզապատը* (սաթըլճան, **pleurésie**): *Հաւանականութեան նշաններ են.— Շնչառութիւն, հեղձկութիւն, կողացաւ, յարատեւ հարբուխ, ցնցղատապ մը, որ կը տեւէ աւելի քան երեք շաբաթ, կամ կը վերսկսի ամէն ձմեռ: Առատուան հազ, առատուան խուխ, նոյն իսկ եթէ շատ քիչ ըլլայ:*

*Բ.— ԱԽՏԱՆՇԱՆՆԵՐ, ՈՐՈՆՔ ՑՈՅՑ ԿՈՒՏԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՌՈՂՋՈՒԹԵԱՆ ՏԿԱՐԱՑՈՒՄԸ.— Ախորժակի պակաս, նիհարութիւն, ծանրութենէ պակսիլ, սովորական յոգնութիւն, ուժաթափութիւն, անբուժելի անարիւնութիւն:*

*Այս նշանները մեծ մասամբ, չնչառական ըլլան թէ ընդհանուր, կրնան հետեւանքն ըլլալ ուրիշ պատճառներու եւ ոչ թէ թոքախտի: Բայց թոքախտն ալ, իր կարգին, կրնայ ներկայացնել այսպիսի նշաններ, մէկն ու միւսը, կամ քանի մը նշան մէկ անգամէն: Բժիշկն է միայն, որ պիտի դատէ ու քննէ այդ նշանները, այնպէս որ պէտք չէ ժամանակ կորսնցնել ենթական տանելու բժիշկին, առ ի լուսաբանութիւն եւ բժշկութիւն:*

Երախաներուն եւ պատանիներուն *գալով, պէտք է միշտ թոքախտի մասին խորհիլ, ամէն անգամ որ ներկայացնեն անարիւնութիւն, տեւական յոգնութիւն, արագ աճում մը՝ նեղ, նիհար եւ տափակ կուրծքով մը: Խոյլը* (սըրաճա, **scrofules**) *ծագումով միշտ հիւծախտ կ'ենթադրէ:*

*Այս նշանները աւելի վախ կը ներշնչեն, եթէ ենթակային շրջապատը կամ ընտանիքը թոքախտի պարագայ մը կը ներկայացնէ: Մարդկային կեանք մըն է, որ խնդրոյ առարկայ է, առանց վայրկեան մը յապաղելու՝ բժիշկին տարէք, կատարել տուէք քննութիւն մը:*

### 7— ԹՈՔԱԽՏԸ ՅԱՃԱԽ ԲՈՒԺԵԼԻ Է

*Թեթեւ թոքախտը կը բժշկուի ինքն իրեն: Երբ քիչ մը աւելի ծանրացած է, անհրաժեշտ է ժամանակ եւ ճիգ՝ դարմանելու համար: Եւ դարմանումը դժուար կամ անկարելի կը դառնայ, եթէ հիւանդութիւնը սկիզբէն իսկ ծանր է կամ երկար տեւած է:*

*Երբ հիւանդութիւնը կը յայտնէ ինքզինք, որոշ նշաններ ցոյց կուտայ, այլ եւս օր մի կորսնցնէք, մէկ սխալ իսկ գործելու ժամանակ չէ: Ամէն յետաձգում աղիտաբեր է: Դարմանումը պէտք է սկսիլ անմիջապէս եւ շարունակել ուժգնօրէն, առանց թերացումի: Երկար պիտի տեւէ անշուշտ, շա՛տ երկար: Առիկա պէտք է գիտնալ առաջուընէ, որպէս զի յետոյ յուսալքում չպատճառէ: Դրամի կը կարօտի, մեծ դրամի: Կառավարութիւնը, խնամատարական, բարեգործական եւ ապահովագրական, ինչպէս նաեւ բժշկական մարմինները պէտք է օժանդակեն, երբ հիւանդին անձնական միջոցները չեն բաւեր:*

*Ժողովրդային ապաքինարաններու* (սանաթօրիոմ) *մէջ դարմանուած հիւանդներէն,— եթէ թեթեւ վարակուած են,— դարմանումի որոշ շրջանէ մը յետոյ, 98 առ հարիւրը կրնան վերսկսիլ իրենց աշխատանքին,— իսկ եթէ ծանրապէս վարակուած են,— 88 առ հարիւրը կրնան աշխատիլ 1 տարի յետոյ, 32 առ հարիւրը 9 տարի յետոյ:*

*Ո՞րն է յարմար վայրկեանը, մարելու համար հրդեհը:— Դեռ կրակը ամբողջ շէնքին մէջ չտարածուած: Թոքախտաւորին համար եւս, խելացութիւն է դարմանումի մը հետեւիլ տակաւին հիւանդութիւնը չտարածուած, իբրպէս հիւանդ չդարձած:*

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## ԹՈՔԱԽՏԱՒՈՐԸ ԵՒ ԻՐ ՇՐՋԱՊԱՏԸ

### 8— ԹՈՔԱԽՏԱՒՈՐԸ Ի՞ՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԽՆԱՄԷ ԻՆՔԶԻՆՔ

*Նախ եւ առաջ անյապաղ, իր դարմանումը յանձնէ փորձառու բժիշկի մը: Եթէ բժիշկը անհրաժեշտ գտնէ անմիջապէս ձգել աշխատանքը, մտնել ապաքինարան կամ հիւանդանոց մը, խելացութիւն է հնազանդիլ առանց ժամանակ կորսնցնելու:*

*Որպէս զի հիւանդ մը կարենայ իր տան մէջ դարմանուիլ, պէտք է ապահոված ըլլայ կատարեալ հանգիստ, անհրաժեշտ սնունդ եւ մաքուր օդ: Շարունակ քննել իր առողջական վիճակը ջերմաչափով եւ կշեռքով: Ապաքինարաններու մէջ դարմանումի եղանակներուն մեծագոյն առաւելութիւններէն մէկն է սորվեցնել հիւանդին թէ ի՛նչպէս պէտք է վարէ իր կեանքը: Եթէ ապաքինարան չէ մտած երբեք, բժիշկն է որ պիտի սորվեցնէ խղճմտութեամբ: Կարելի չէ հոս մանրամասն խօսիլ, բայց յիշեցնենք գլխաւոր կէտերը:*

Սնունդի տեսակէտէն, *պէտք չէ կարծել թէ հիւանդը պիտի սնանի առատ եւ նրբաճաշակ կերակուրներով: Սնունդը պէտք է ըլլայ պարզ եւ չափաւոր քանակութեամբ: Ընդհանրապէս բնական արտադրութիւններ, ալիւրեղէններ, բանջարեղէններ, պտուղ, կաթ եւ կաթնեղէն, քիչիկ մը միս, ժամանակ առ ժամանակ կիթ մը, շաքար:*

(Շարունակելի)

